մանագլուխն անցնիլ «Հարիւրապետ Քոսթա» կոչուած պահականոցի կողմէն, Փէթաչինցի գիւղին մօտերը։

Սերպ պահակները կրակ բացին պուլկար պահականոցին վրայ, վիրաւորելով պուլկար զինուոր մը։ Գիւղի քաղաքապահներուն աջակցութեամբ, պուլկար պահականոցի զինուորները յաջողեցան ետ մղել յարձակողները։ Պուլկար հարիւրապետը պահանջեց քննութիւն մը բանալ, սակայն եուկոսլաւ սպան մերժեց։

⁂ Պելկրատէն հասած լուրերն ալ կ'ըսեն թէ՝ երբ (իշեալ երկու անծանօթները տեսան սերպ սահմանապահները, անմիջապէս կրակ բացին անոնց վրայ, շուրջ 20 գնդակ արձակելով եւ ռումբեր նետելով պահականոցի ուղղութեամբ։ Յետոյ փախուստ տուին եւ մութէն օգտուելով պուլկար հողը մտան։

## Դամասկոսի ցուցահանդէսը

Ուրբաթ օր հանդիսաւորապէս բացուեցաւ Դամասկոսի ցուցահանդէսը, ներկայութեամբ մեծ բազմութեան մը՝ եկած Լիբանանի եւ Սուրիոյ զանազան քաղաքներէն։ Բացման արարողութեան կը նախագահէր Սուրիական պետութեան նախագահը, իր շուրջ ունենալով ֆրանս. մարզպանի ներկայացուցիչները ու քաղաքային ու զինուորական բարձրաստիճան անձնաւորութիւններ։

կատարեալ խաղաղութիւն կը տիրէ ամբողջ Սուրիոյ մէջ։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ անգլ. հնագիտական վարժարանի տնօրէն Քրաուֆութի ղեկավարութեամբ եւ Եէյլ համալսարանի օժանդակութեամբ վերջնապէս երեւան հանուեցաւ 6րդ դարու բիւզանդական հոյակապ եկեղեցի մը Ճէրաշի (Անդրյորդանան) մէջ, նախկին Gerasa, որ յիշուած է Պտղոմէոսի, Պլինիոսի եւ Ստրաբոնի կողմէ։

ԱԹԷՆՔԻ մէջ անընդհատ երկու ժամ տեւող փոթորիկն ու տեղատարափ անձրեւները մեծ վնասներ պատճառեցին, մանաւանդ գաղթականներու բնակած ցած թաղերուն։

ԹԷՀՐԱՆԻ մէջ Պարսկաստանի եւ Իտալիոյ միջեւ Անայուն եւ Պելճիքայի հետ առժամեայ դաշնագիրներ կնքուեցան։

ԹԱՇՔԷՆՏԻ մէջ սպաննուած է ռուս նշանաւոր բժիշկ փրոֆ. Միխայլովսկի, որուն աշխատութիւնները արեան փոխանցման մասին՝ հանրածանօթ են ամբողջ աշխարհի մէջ։ Ցարդ կարելի չէ եղած գտնել մարդասպանը եւ հասկնալ ոճիրին շարժարիթը։

ԱՍՏՐԱԽԱՆԻ մէջ կը դատուին 80 խորհրդային պաշտօնեաներ, որոնք զեղծարարութեամբ ամբաստանուած են։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

իսկ մեր երկրին ոյժն ու ապահովութիւնը: Հարիւրաւոր հրեայ երիտասարդներ պատրաստ կը սպասեն հայրենիք երթալու, եւ եթէ նիւթական միջոցներ ունենանք, այն ատեն անտարակոյս կը հասնինք մեր նպատակին:

Մեռեալները խնկան Հրէութեան եւ հրէական ապագային համար: Անօգուտ սուգով եւ ապարդիւն բողոքներով ոչինչ կրնանք ընել: Դժբախտութեան մէջ մանաւանդ պէտք է ի յայտ գայ հրէական գեղեցիկ համերաշխութիւնը:

Կը փափաքինք շատ շուտ վերաշինել ջարդարարներուն աւերները, եւ նոր ու աւելի մեծ գործեր կատարել:

Բարբարոսներուն բռնութիւնը եւ անիրաւութիւնները դարձեալ չկրցան խախտել Հրեաներու արիութիւնը, կորովն ու յոյսը: Ուրեմն, յառա՛ջ»:

## Պաղեստինի քննիչ մարմինը

Պաղեստինի քննիչ մարմինը կազմուեցաւ հետեւեալ կերպով.— նախագահ՝ սըր Ուոլթըր Շօ, դատարանի նախկին նախագահ, սըր Ռոպըրթ Համիլթըն՝ ազատական երեսփոխան, Հարրի Սնէլ՝ աշխատաւորական երեսփոխան, հազարապետ Էլլիոթ՝ պահպանողական երեսփոխան:

## Նախազգուշական միջոցներ

Տէյլի Թէլէկրաֆի երուսաղէմի թղթակիցը կը հեռագրէ.—

Իշխանութիւնները շատ մտահոգ են եւ կը վախնան որ ուրբաթ օր (երէկ) նոր դէպքեր պատահին: Այս պատճառով նախազգուշական միջոցներ ձեռք առնուեցան: Օգնական զինուորներ եւ ոստիկաններ կը հասնին քաղաքը եւ Պաղեստինի բոլոր այն վայրերը, ուր խռովութիւններէ կը վախցուի:

Պէտէվինները անցած են Մաճամայի կամուրջը՝ Գալիլիոյ լիճին մօտ. Արաբները յարձակած են հրէական Միշմար-Հայարտին գիւղին վրայ եւ արջառ կողոպտած:

Հրէական գլխաւոր թերթը՝ «Տօր Հայամ» խափանուեցաւ:

## Մեծ աղէտ Թուլոնի շրջանին մէջ

Աղջի օր աննախընթաց կիկլոն մը պայթեցաւ Միջերկրականի եզերքին վրայ, Թուլոնէն մինչեւ Մարսէյլ, ահագին վնասներ պատճառելով: Ամիսներէ ի վեր խիստ երաշտութիւն կը տիրէր մանաւանդ Թուլոնի շրջանին մէջ. ջուրի պակասը զգալի էր ոչ միայն գիւղերուն, այլ քաղաքներուն մէջ ալ:

Փոթորիկը սկսաւ չորեքշաբթիէն հինգշաբթի լուսնալիք գիշերը եւ առատ անձրեւ տեղաց երկրագործական այդ շրջանին վրայ, սկիզբը մեծ ուրախութիւն պատճառելով բնակչութեան, որ կաթիլ մը անձրեւի կարօտը կը քաշէր՝ այգեկութքի սկսելու համար: Հետզհետէ սակայն անձրեւը ա՛յնքան սաստկացաւ, որ բոլոր այգիները աւրշտկուեցան ու քանի մը ժամուան մէջ ահագին հարստութիւն փճացաւ:

Գիշերը Քալլասի զանգակատան վրայ կայծակ ինկաւ՝ քանդելով զայն. վնասուեցաւ շէնք մը եւ վիրաւորուեցան քանի մը հոգի:

Հինգշաբթի առաւօտ երկինքը սպառնական էր. ատեն ատեն որոտումներ կը լսուէին, տեղ տեղ սաստիկ կ՚անձրեւէր: Սակայն կէսօրին յանկարծ իրական կիկլոն մը պայթեցաւ Վառ նահանգի հարաւային կողմին, Թուլոնի շրջանին վրայ: Թուլոնը շրջապատող բլուրներու գագաթները կորսուած էին ամպերու մէջ, զորս յաճախ կը ճեղքէին կայծակներ: Անձրեւը կը թափէր ջրվէժի պէս եւ հսկայ հեղեղներ կազմած կը յառաջանար դէպի քաղաք: Էկուրիէ գետը քանի մը վայրկեանի մէջ ուռելով յորդեցաւ երկու կողմերէն: Շրջակայ բոլոր գիւղերը ջուրերու տակ մնացին: Մասնաւորաբար վնասուեցաւ Մուրիյեռն թաղը, ուսկից գետը ծով կը թափի: Ս. Ֆիլոմէն հին վանքին պատերը փլան, գաղթային մատակարարութեան շէնքն ալ վնասուեցաւ: Փոր-Մարշան թաղին եւ քաղաքին ստորին մասին մէջ կոյուղիներէն ելած ջուրերը ողողեցին փողոցները, որոնք անանցանելի դարձան: Թէ՛ Թուլոնի եւ թէ գիւղերուն մէջ մեծ թիւով տուներ վնասուեցան: Ընկոյզի մեծութեամբ կարկուտ կը տեղար դաշտերուն մէջ՝ փճացնելով այգիներն ու պտղատու ծառերը: Թուլոնի բնակիչները երբեք նման աղէտ չէին տեսած: Ծառեր արմատախիլ կ՚ըլլային, ճամբաները կը գոցուէին, երթեւեկը կ՚ընդհատուէր:

Քաղաքին եւ նաւային իշխանութեանց հրշէջները անմիջապէս կազմակերպեցին օգնութեան գործը՝ վտանգուած տուներու բնակիչները ազատելու համար:

Կլայխի մեծ կրկէսը, որ Ռոտի մօտ վրան զարկած էր, մօտ երկու միլիոնի կորուստ ունեցաւ: Վրանները թռան: Վանդակի մէջ չգտնուած կենդանիները՝ փիղ, ուղտ, ձի եւ ցուլ սարսափահար փախան:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ԱԼ

Մարսէյլէն ալ կը հաղորդեն որ հինգշաբթի կէսօրէն վերջ ճշմարիտ ուրական մը պայթեցաւ այդ քաղաքին վրայ: Վառ նահանգին հետ հաղորդակցութիւնները խզուեցան անմիջապէս, կառախումբերը երկար յապաղումներ ունեցան: Խոշոր կարկուտներ ջարդուփշուր ըրին ապակիները: Մարսիլիոյ փողոցները յորձանքներու վերածուեցան: Ժամերով ո՛չ հանրակառք ոչ ալ ինքնաշարժ կրցաւ բանիլ:

## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

Փարիզի Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Վռամեան ենթակոմիտէի անդամները վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին իրենց ծանօթ հաւաքատեղին,

Պէլվիլի Ռոստոմ կոմիտէի ժողովը՝ այսօր շաբաթ իրիկուն ժամը 9ին: Ռոստոմի սրահը 131 Fbg. du Temple: Զեկոյց ներկայացուցիչներէ:

Անիէռ-Պուա-Քոլոնպի Եռագոյն ենթակոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ՝ Զեկոյց ներկայացուցչական ժողովի եւայլն:

Ալֆորվիլի Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Հաճի Մկրի Սրճարանը Rue Etienne Dolet. Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

Քաշան-Պանեէօի Արծիւ խումբի ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2.30ին ծանօթ հաւաքատեղին:

### ԳԱՒԱՌ

Ցէսինի կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերու ընկերները վաղը կիրակի ժամը 2ին Քաֆէ Պէնզօնի: Ժողովը կը վերջանայ ժամը 4ին: Օրակարգ՝ Նախորդ ժողովի շարունակութիւնը: Նորեկ ընկերներէ կը խնդրուի ներկայ գտնուիլ արձանագրուելու համար:

Ռօանի Ակնունի խումբի ժողովը՝ վաղը կիրակի ընկ. Հ. Պագրճեանի բնակարանը:

Լիոնի Պատանեկան Միութեան 6րդ դասախօսական ժողովը՝ 16 սեպտ. Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Կը խօսի՝ ընկ. Բարկէն: Նիւթ՝ Նախորդ դասախօսութեան շարունակութիւն:









Օրիորդ Սաթենիկ Դաւիթեան (Ժուայեէօզ) սրտի դառն կսկիծով կը ծանուցանէ իր սիրեցեալ քրոջ՝

### ՕՐ. ԵՐԱՆՈՒՀԻ ԴԱՒԻԹԵԱՆԻ

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ 1929 Սեպտ. 6ին, 25 տարեկան ծաղիկ հասակին մէջ, չորս տարուայ տաժանելի հիւանդութենէ մը յետոյ:

Հանգուցեալին յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Սեպտ. 8ին կիրակի օր, եւ մարմինը ամփոփուեցաւ Ժուայեէօզի (Արտէշ) գերեզմանատան մէջ:

Օր. Ս. Դաւիթեան իր շնորհակալութիւնները կը յայտնէ ամէն անոնց՝ որոնք անձամբ կամ նամակով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իր քրոջ դառնաղէտ մահուան առթիւ:












IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN












